ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



СОДЕРЖАНИЕ



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78*

**Адрес редакции** — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 12
ՀՈՒՆԻՍ
1964

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ՔԻՄԻԱՆ ՏԱԼԻՍ Է ԱՌԱՏՈՒԹՅԱՆ ԲԱՆԱԼԻՆ

(Արտաշատի արտադրական վարչության Սպանդարյանի անվան սովխոզի ագիտատոր Ջանիբեկ Տոնոյանի զրույցը ունկնդիրների հետ)

*Ագիտատոր, բրիգադիր Ջանիբեկ Տոնոյանը սովորաբար շուտ է գալիս դաշտ, շրջում այգիները, տիրոջ հայացքով զննում խաղողի վազերը և իր մոտ նշումներ կատարում։ Այդպես նա շրջագայում է դաշտամասից-դաշտամաս, այգեմասից-այգեմաս, վազից-վազ, դիտողություններ անում, խորհուրդներ տալիս բանվորներին։*

*Կեսօրին բրիգադիրը քայլերն ուղղում է դեպի անտառաշերտը, ուր բարդիների ստվերում բանվորները նստում են հանգստանալու։ Նա ունկնդիրների հետ հանգստի ժամին հետաքրքիր զրույցներ է ունենում, իսկ հաճախ նրանց համար թերթեր կարդում։*

*Ագիտատորը վերջերս իր ունկնդիրների հետ զրույց ունեցավ պարարտանյութերն արդյունավետ օգտագործելու մասին։*

*— Հողի ամեն մի հեկտարից,— ասաց նա զրույցի սկզբում,—երաշխավորված բարձր բերք ստանալու կարևորագույն պայմանը գյուղատնտեսությունը գիտական հիմունքներով վարելն է, արտադրության ինտենսիվա-*

ցումը։ Այդ խնդիրները հաջող լուծելու գործում մեզ օգնության է գալիս քիմիան՝ իր բոլոր հրաշալիքներով։ Նախատեսվում է առաջիկա տարիներում շեշտակիորեն ավելացնել հանքային պարարտանյութերի, բույսերի պաշտպանության միջոցների և բուսաբուծության համար այլ քիմիական նյութերի արտադրությունը։ 1964 և 1965 թվականներին կարտադրվի այնքան հանքային պարարտանյութ, որով հնարավոր կլինի ապահովել բոլոր հիմնական տեխնիկական կուլտուրաների ցանքերի մշակումը, մի մասն էլ օգտագործել հացահատիկային կուլտուրաների համախառն բերքն ավելացնելու համար։ Միայն 1964 թվականին հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները պարարտացնելու համար կհատկացվի 10 միլիոն, 1965 թվականին՝ 15 միլիոն տոննա պարարտանյութ։

Ագիտատորը պարզաբանում է, թե առաջին հերթին որտեղ են օգտագործում և որտեղ կօգտագործվեն երկրագործների այս «քիմիական օգնականների» միլիոնավոր տոնները։

Պարարտանյութերը ավելի լավ ու հաստատ հատուցվում են աշնանացան հացահատիկի, եգիպտացորենի ու բրնձի դաշտերում։ Ուստի բնական է, որ դրանք առաջին հերթին կօգտագործվեն այս կուլտուրաների համար։ Խոսելով այդ կուլտուրաների ցանքերի պարարտացման տնտեսական մեծ արդյունավետության մասին, ագիտատորը թվերով ցույց է տալիս, թե ինչ է տալիս մեկ ցենտներ հանքային պարարտանյութը։

Այնուհետև ագիտատորը պատմում է խաղողագործության մեջ քիմիական միջոցների օգտագործման մասին։ Խաղողի վազը որպես բազմամյա կուլտուրա, տերևների, շվերի, բերքի հետ միասին հողից վերցնում է զգալի քանակությամբ սննդանյութեր։ Ուստի անհրաժեշտություն է զգացվում ամեն տարի պարարտացումների և սնուցումների միջոցով հողին վերադարձնել կորցրածը։ Ինչպես մեր, այնպես էլ հարևան տնտեսությունների փորձը ցույց է տվել, որ պարարտացման աշխատանքների լավ կազմակերպումը միշտ ապահովում է ստանալ բարձր բերք։

Ամենից առաջ չպետք է մոռանալ,— ասում է ագիտատորը,— որ պարարտանյութերի միակողմանի օգտագործումը բացասաբար է ազդում խաղողի բերքի որակի, այնպես էլ քանակի վրա։ Ուստի անհրաժեշտ





է պարարտանյութերն օգտագործել համատեղ (ազոտ. ֆոսֆոր, կալիում), որոշակի քանակով, չմոռանալով նաև օրգանական պարարտանյութերը։ Փորձը ցույց է տվել, որ երբ վազերը պարարտացվում են միայն ազոտով, ապա խաղողի մեջ շաքարի տոկոսը զգալի չափով պակասում է, իսկ ընդհակառակը, ֆոսֆորի և կալիումի համատեղ օգտագործման դեպքում շաքարի տոկոսը բարձրանում է մոտ 1—1,5 տոկոսի սահմաններում։

Այգիները պարարտացնելիս մենք հաշվի ենք առնում հողերի բերրիությունը։ Ե՞րբ է ավելի ձեռնտու պարարտանյութեր տալ այգիներին։ Շատ արդյունավետ է, երբ վաղ գարնանը այգիները սնուցվում են սուպերֆոսֆատի և սելիտրայի խառնուրդով։ Օրինակ, մենք այգեփորից առաջ յուրաքանչյուր հեկտարին տալիս ենք 200 կիլոգրամ սելիտրա և 400 կիլոգրամ սուպերֆոսֆատ, ապա կատարում միջշարային տարածությունների տրակտորային վար։ Բացի դրանից, այգիները սնուցում ենք երեք անգամ՝ հեկտարին տալով 100-ական կիլոգրամ սելիտրա։ Երրորդ սնուցումը տրվում է պտղալիցի ժամանակ։ Արդյունավետ է, երբ պարարտացման ժամանակ միջվազային տարածություններում փորում ենք 30 սանտիմետր խորությամբ փոսեր, դրանք լցնում կոմբինացված հանքային նյութերով, ապա ծածկում հողով։ Իսկ սնուցման համար սելիտրան լցնում ենք միջշարային տարածության այն հատվածում, որտեղից ոռոգվող ջուրը հոսելու է։ Պարարտանյութը լուծվում է ջրի մեջ և հավասարապես սնուցում հողը։

Մեր սովխոզի խաղողի այգիները պարարտացնելու և սնուցելու համար այս տարի օգտագործելու ենք 750—800 տոննա տարբեր տեսակի պարարտանյութեր, անցած տարվա 150 տոննայի փոխարեն։ Այդ նշանակում է գործողության մեջ դնել ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումը՝ քիմիան արմատավորել արտադրության մեջ։

— Քիմիան,— շարունակում է իր զրույցը ագիտատորը,— մեզ օգնում է նաև խաղողի ու պտղատու այգիների հիվանդությունների և վնասատուների դեմ տարվող պայքարի գործում։ Խիստ արդյունավետ են բույսերի պաշտպանության քիմիական միջոցները։ Մեր երկրում ամեն տարի վնասատուների և հիվանդությունների պատճառով գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների համախառն բերքի կորուստները կազմում են 14—

15 տոկոս։ Այդ ավելի ակնառու կերպով երևաց անցած տարի, երբ ոչ միայն մեզ մոտ, այլև հարևան տնտեսություններում զգալի բերք կորստի մատնվեց։ Մեր պայմաններում խաղողի բերքատվությունը հիմնականում իջնում է սնկային հիվանդությունների պատճառով։ Այդ հիվանդությունների դեմ քիմիական պայքարը մենք սկսում ենք մինչև նրա սպորների ներթափանցվելը վազի օրգանների մեջ։ Պրոֆիլակտիկ աշխատանք ենք կատարում նաև մյուս հիվանդությունների ու վնասատուների դեմ պայքարելու նպատակով։ Մեր արդյունաբերությունը գյուղատնտեսությանը մատակարարում է անհրաժեշտ թունաքիմիկատներ՝ պղնձարջասպ, ծծումբ և այլ բուժանյութեր, որոնց ժամանակին և արդյունավետ օգտագործումը կտա ցանկալի արդյունք։ Խաղողի և պտղատու այգիների վնասատուների ու հիվանդությունների դեմ տարվող պայքարում մեզ օգնում է ավիացիան։ Ինքնաթիռների միջոցով կատարվում են բույսերի սրսկումներ և փոշոտումներ։

Ինչպես գիտեք, մեզ մոտ բուժանյութերը պատրաստվում էին առանձին տակառների մեջ։ Յուրաքանչյուր օղակ, այգեգործ ինքն էր իր այգեմասի համար բուժանյութ պատրաստում։ Ստացվում էր այնպես, որ որոշ դեպքերում անորակ էր պատրաստվում բուժանյութը և անհրաժեշտ արդյունք չէր տալիս։ Մենք այս տարի ստեղծել ենք բուժանյութերի պատրաստման դաշտային կայան, որտեղ միանգամից պատրաստվում է 20 հազար լիտր լուծույթ։ Այդ հնարավորություն է տալիս օրական պատրաստել 100 հազար լիտր լուծույթ և փոխադրել դաշտամասեր՝ այգիները բուժելու նպատակով։ Լուծույթի պատրաստման այդ եղանակը հնարավորություն է տալիս օգտագործել ավելի քիչ բանվորական ուժ ու բուժանյութ, ինչպես նաև բարձրացնել պատրաստված լուծույթի որակը։

— Քիմիայի կիրառումը գյուղատնտեսական արտադրության մեջ,— ասում է ագիտատորը զրույցի վերջում, — վիթխարի դեր է խաղում գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա վերելքի գործում։ Ուրեմն մեքենայացումը, քիմիացումը և ոռոգումը մեր աշխատանքի ուղեցույցն են։ Մենք ինչպես միշտ, այսուհետև ևս ուժեր չենք խնայի պարտիայի կողմից գյուղատնտեսության աշխատողներիս առջև դրված հոյակապ խնդիրները սրբությամբ կենսագործելու համար։

Մ. ԽՐԻՅՅԱՆ

ՉԻՆԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԻ ՍԽԱԼՆԵՐԻ ՄԱՍԻՆ. ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՉԻՆԱՍՏԱՆԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՅԻ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՅԱՑՔՆԵՐՆ ՈՒ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՄԱՆՐԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ, ՆԱՑԻՈՆԱԼԻՍՏԱԿԱՆ, ՆԵՈՏՐՈՑԿԻՍՏԱԿԱՆ ԹԵՔՈՒՄ ԵՆ*

Մեր պարտիան միշտ ըստ արժանվույն գնահատել է ռևոլյուցիայի հաղթանակից հետո դեմոկրատական ու սոցիալիստական վերափոխումների իրականացման գործում չինական կոմունիստների կուտակած փորձը։ 1949 թվականից մինչև 1957 թվականը Չինաստանի կոմպարտիան, իրականացնելով ռեալիստական կուրս, օգտագործելով մյուս սոցիալիստական պետությունների փորձը և հենվելով նրանց աջակցության վրա, մեծ հաջողություններ ձեռք բերեց երկրի տնտեսական ու սոցիալ-քաղաքական զարգացման գործում։ Սակայն 1958 թվականին այդ կուրսը հանկարծ վերանայվեց և փոխարինվեց այսպես կոչված «երեք կարմիր դրոշների՝ գլխավոր գծի, մեծ ցատկի և ժողովրդական կոմունաների» կուրսով։ Չինական ղեկավարները որոշեցին այն խնդիրները, որոնց լուծմանը դեռ 1956 թվականին հատկացվում էր երեք հնգամյակ և ավելի, կատարել մի քանի տարում։ Որոշվեց մեկ հնգամյակում (1958—1962 թ. թ.) արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացնել 6,5, իսկ գյուղատնտեսության համախառն արտադրանքը՝ 2,5 անգամ։ Այս պլանները կազմվում էին առանց տնտեսագիտական որևէ հիմնավորման, առանց երկրի ռեալ հնարավորությունները հաշվի առնելու։ Գյուղում ստեղծված ժողովրդական կոմունաները պետք է երեք-չորս կամ հինգ-վեց տարում ապահովեին «ցատկը մինչև կոմունիզմ»։

Այս բոլոր փորձերի հետևանքով ՉԺՌ-ի էկոնոմիկան ետ շպրտվեց մի քանի տարով։ «Երեք կարմիր դրոշների» կուրսը լրջորեն խախտեց ամբողջ ժողովրդական տնտեսությունը, խիստ դանդաղեցրեց ինդուստրացման տեմպերը, անդրադարձավ ժողովրդի նյութական դրության վրա։ Այս փաստերի մասին մենք խոսում ենք սոսկ ցույց տալու համար, թե ինչի է հանգեցնում սո-

* Սկիզբը տես «Ագիտատորի բլոկնոտ»-ի 11-րդ համարում։

ցիալիզմի կառուցման լենինյան սկզբունքներից նահանջելը: Սովետական կոմունիստներն էլ չինական կոմունիստների նման վշտացած են, որ եղբայրական չինական ժողովրդին բախտ են ընկել այդպիսի դժվարություններ:

Չինական ղեկավարության այսօրվա դիրքի ակունքները վերլուծելիս, չի կարելի չտեսնել նաև ավելի ու ավելի ուժեղացող բացահայտ նացիոնալիստական, մեծապետական ձգտումները, որոնք հատկապես խիստ դրսևորվում են Չինաստանի կոմպարտիայի պարագլուխների արտաքին քաղաքական գործունեության մեջ: Պատմության մեջ քիչ չեն դեպքերը, երբ ճղճղան «ռևոլյուցիոնարիզմն» ընթացել է ամենասանձարձակ նացիոնալիզմի հետ ձեռք-ձեռքի տված: Լենինը բազմիցս նշել է, որ այն նույն սոցիալ-տնտեսական պայմանները, որոնցից ծնունդ է առնում մանր սեփականատերը, անխուսափելիորեն տանում են դեպի «մանրբուրժուական ամենախոր նախապաշարմունքների, այն է՝ ազգային էգոիզմի, ազգային սահմանափակվածության նախապաշարմունքի առանձին ուժեղացումը և կայունացումը» (Երկեր, հատ. 31, էջ 172): Նացիոնալիզմն ավելի ու ավելի է գերակշռում չինական ղեկավարության ամբողջ քաղաքականության մեջ: Դա արդեն դրսևորվել է «մեծ ցատկի» ժամանակաշրջանում, որը պարզապես հորինվել է որպես կայծակնային արագությամբ բոլոր սոցիալիստական երկրներից անցնելու, համաշխարհային սոցիալիստական սիստեմում գերակշռող դիրք գրավելու փորձ: Դա իր արտահայտությունն է գտել նաև չինական կառավարության կողմից սահմանային հարցերի շուրջն արհեստականորեն նացիոնալիստական կրքեր բորբոքելու, կարաիբյան ճգնաժամի ժամանակ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարների վարմունքի, միջուկային հարցում նրանց դիրքի մեջ:

Փաստերը վկայում են, որ երբ խոսքը վերաբերում է միջազգային ասպարեզում գործնական քայլերին, Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները գերադասում են գործել ամենևին էլ ոչ իմպերիալիզմի դեմ ռևոլյուցիոն պայքարի դիրքից: Մեծ զարմանք է առաջացնում այն փաստը, որ ներկայումս չինական պրոպագանդան, երբ խոսում է իմպերիալիզմի դեմ պայքարի մասին, այն ամբողջովին հանգեցնում է Ամերիկայի Միացյալ



Նահանգների դեմ պայքարին, շրջանցելով նրանց դաշնակիցներին՝ ճապոնական, արևմտագերմանական, անգլիական, ֆրանսիական իմպերիալիստներին: Արդյոք չինական գործիչներն այդ երկրների մոնոպոլիստական շրջաններում պարտնյորներ չե՞ն որոնում այսպես կոչված «ժամանակակից ռևիզիոնիզմի» դեմ մղվող պայքարում:

Մեծ կասկած է առաջացնում նաև չինական ղեկավարների կողմից առաջ քաշված «միջանկյալ գոտու» տեսությունը, որն Արևմտյան Գերմանիան, Անգլիան, Ֆրանսիան ու Ճապոնիան դիտում է որպես ամերիկյան իմպերիալիզմի լծի տակ գտնվող երկրներ, դրանով իսկ գունազարդելով Անգլիայի, Ֆրանսիայի, Ճապոնիայի և հատկապես Արևմտյան Գերմանիայի իմպերիալիստներին, քողարկելով նրանց ագրեսիվ էությունը և վտանգավորությունը սոցիալիստական երկրների ժողովուրդների, ազգային ազատագրական շարժման, ընդհանուր խաղաղության համար: ԳՖՌ-ի իմպերիալիզմն այժմ ամենևին էլ ուղղակի ԱՄՆ-ի իմպերիալիզմի սատելիտը չէ: Արևմտագերմանական իմպերիալիզմն արդեն ստեղծել է խոշոր ռազմական ուժ և ավելի է տոն տալիս ՆԱՏՕ-ում: Փոքր վտանգ չէ նաև Անգլիայի, Ֆրանսիայի, Ճապոնիայի իմպերիալիզմը:

ՍՄԿՊ-ն ելնում է այն բանից, որ ամերիկյան իմպերիալիզմի՝ ամենախոշոր միջազգային շահագործողի և ժանդարմի դեմ վճռական պայքարի հետ միասին, հակաիմպերիալիստական բոլոր ուժերը պետք է միևնույն ժամանակ պայքարեն անգլիական, ֆրանսիական, արևմտագերմանական, ճապոնական իմպերիալիզմի ագրեսիվ, ռեակցիոն ուժերի դեմ: Իսկ «միջանկյալ գոտու» չինական տեսությունը գունազարդում է Անգլիայի, Ֆրանսիայի, Արևմտյան Գերմանիայի, Ճապոնիայի իմպերիալիստներին և ձեռնտու է նրանց:

Իմպերիալիստական տերությունների կառավարող շրջանները չինական քաղաքականության «համն առել են»: Նրանք հասկացել են, որ չինական ղեկավարների «ռևոլյուցիոն ֆրազներն» ամենևին էլ ուղղված չեն իմպերիալիզմի դեմ և նրան ոչնչով չեն սպառնում, այլ կոչված են քողարկելու կատաղի պայքարը ՍՄԿՊ-ի և համաշխարհային կոմունիստական շարժման դեմ: Հենց դրանով է բացատրվում Չինաստանի նկատմամբ առաջատար կապիտալիստական պետությունների քաղաքա-

կանության մեջ այժմ նկատվող շրջադարձը:

Մարքսիստ-լենինյանները, հետևելով չինական ղեկավարության մանյովրներին, օրինական տագնապ են զգում այն բանի համար, թե չինական ղեկավարները դեպի ինչ վտանգավոր ուղի են տանում իրենց երկիրը։ Հանկարծ այնպես չստացվի, որ ընթանալով իրենց սխալ, հակալենինյան ուղիով, չինական ղեկավարները փաստորեն հարեն իմպերիալիզմի ռեակցիոն, ռազմաշունչ տարրերին, ինչպես դա տեղի ունեցավ միջուկային զենքի փորձարկումն արգելելու Մոսկվայի պայմանագիրը ստորագրելուց ՉԺՌ-ի կառավարության հրաժարվելու կապակցությամբ:

Չինաստանի կոմպարտիայի ղեկավարների նացիոնալիստական կուրսը ոչինչ ընդհանուր չունի եղբայրական չին ժողովրդի իսկական ազգային շահերի հետ: Չինաստանի ժողովուրդների անկեղծ դաշնակիցներն են առաջին հերթին սոցիալիզմի լագերի երկրները: Սոցիալիզմի ուղիով ժողովրդական Չինաստանի արագ առաջընթացի գրավականը համաշխարհային սոցիալիստական սիստեմի ամրապնդումն է, բոլոր հակաիմպերիալիստական ուժերի հետ ամուր դաշինքը:

Ինչպես երկրի ներսում, այնպես էլ միջազգային ասպարեզում Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի այժմյան դիրքերը հնարավոր չէ հասկանալ, առանց հաշվի առնելու Մաո Ցզե-դունի անձի պաշտամունքի արմատավորման հետևանքով Չինաստանի կոմունիստական պարտիայի ներսում ու երկրում ստեղծված իրադրությունը: Անհատի պաշտամունքն ավելի ու ավելի բացասաբար է անդրադառնում Չինաստանի կոմպարտիայի գործունեության վրա: Չինական պրոպագանդան բոլորին ու յուրաքանչյուրին համառորեն ներշնչում է, թե Մաո Ցզե-դունի գաղափարները «մարքսիզմ-լենինիզմի ամենավեհ մարմնավորումը», «սոցիալիստական ռևոլյուցիայի և սոցիալիզմի, կոմունիզմի կառուցման գիտական տեսությունն» են, իսկ մեր դարաշրջանը «Մաո Ցզե-դունի դարաշրջանն» է:

Այժմ արդեն միանգամայն պարզ է, որ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությունն աշխատում է Մաո Ցզե-դունի անձի պաշտամունքը տարածել ամբողջ համաշխարհային կոմունիստական շարժման վրա, որպեսզի Չինաստանի կոմպարտիայի ղեկավարը, ինչպես իր ժամանակին Ստալինն էր, աստծու նման կանգնած լինի մարքսիստական-լենինյան բոլոր պարտիաների վրա



և կամայականորեն լուծի նրանց քաղաքականության ու գործունեության բոլոր հարցերը: Անհատի պաշտամունքի գաղափարախոսությունն ու պրակտիկան մեծ չափով բացատրում են չինական ղեկավարների մոտ հեգեմոնիստական մտահղացումների երևան գալը:

Բայց կոմունիստական շարժումն անհամատեղելի է անհատի պաշտամունքի հետ: ՍՄԿՊ XX համագումարը մեր պարտիայում ընդմիշտ վերջ տվեց մարքսիզմ-լենինիզմին խորթ այդ երևույթին, բոլոր պայմաններն ստեղծելով, որպեսզի երբեք չկրկնվեն անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում հաստատված կարգերը: ՍՄԿՊ XX համագումարի կուրսը լիովին պաշտպանվեց Մոսկվայի խորհրդակցությունների դեկլարացիայում և հայտարարության մեջ: Ուստի դատապարտել անհատի պաշտամունքի դեմ մղվող պայքարը՝ նշանակում է նահանջել կոմունիստական շարժման համաձայնեցված գծից, այն գիտակցաբար մղել դեպի մարքսիզմ-լենինիզմին և սոցիալիստական կարգերին խորթ, սխալ ուղի:

Չինական ղեկավարները բացահայտորեն ստանձնել են Ստալինի անձի պաշտամունքի պաշտպանների դերը, հայտարարել են, թե իբր պայքարել դրա դեմ՝ նշանակում է «տապալել մարքսիզմ-լենինիզմը», «արատավորել պրոլետարիատի դիկտատուրան»: Մինչդեռ հենց անհատի պաշտամունքն է տանում դեպի պրոլետարիատի դիկտատուրայի կարևորագույն կողմերի աղճատում, դիկտատուրա, որը հանդիսանում է դեմոկրատիայի բարձրագույն ձևը՝ դեմոկրատիա աշխատավորների համար: Լենինի օրոք պարտիական ու պետական կյանքում խիստ կերպով պահպանվում էին դեմոկրատական սկզբունքները, սոցիալիստական օրինականությունը: Հակապարտիական խմբերի ու հոսանքների դեմ Լենինը պայքարում էր պարտիական մեթոդներով, հենվելով պարտիական մասսաների վրա: Ստալինի անձի պաշտամունքի ժամանակաշրջանում գերակշռեց այլ մեթոդ՝ ֆիզիկական հաշվեհարդարի մեթոդը պարտիայի այն գործիչների նկատմամբ, որոնց Ստալինը կասկածում էր իր հայացքների հետ համաձայն չլինելու մեջ: Պրոլետարիատի դիկտատուրայի պատժիչ սուրը, որն ստեղծվել է թշնամիներին հարվածելու համար, Ստալինն ուղղեց կոմունիստական պարտիայի և սոցիալիստական պետության կադրերի դեմ:

Ինչպես երևում է, չինական ղեկավարների սրտով է

Ստալինի գործունեության հենց այդ կողմը, քանի որ
նրանք ղեկավարման նրա սխալ մեթոդները նույնաց-
նում են պրոլետարիատի դիկտատուրայի հետ։ Չնայած
լայնորեն հայտնի են դարձել անհատի պաշտամունքի
ժամանակաշրջանում Ստալինի կողմից իշխանության
չարաշահման բազմաթիվ փաստերը, չնայած Ստալինը
մի շարք կարևոր հարցերում շեղվել է լենինյան պատվի-
րաններից, չինական ղեկավարները նրան վեր են բարձ-
րացնում, պատկերելով որպես Լենինի գործի «մեծ շա-
րունակող»։ Անհատի պաշտամունքի ժամանակաշրջա-
նում տեղի ունեցած մասսայական հալածանքների մա-
սին չինական ղեկավարներն ասում են, թե դրանք սոսկ
ոչ մեծ «խոտորումներ» են եղել։ Չինական ղեկավարնե-
րի այդպիսի գիծը ոչ մի լավ բան չի խոստանում ժողո-
վրդին։ Դրա մեջ դրսևորվում են ոչ թե մարքսիստների,
ոչ թե լենինյանների, այլ այնպիսի մարդկանց գաղա-
փարախոսությունն ու բարոյախոսությունը, որոնք հույ-
ները դնում են բռնության, ճնշման մեթոդների վրա։

Մեր պարտիան ջախջախեց Մոլոտովի, Կագանովիչի,
Մալենկովի հակապարտիական խումբը։ Այդ խումբը դի-
մադրում էր անհատի պաշտամունքի վերացմանը, և
այդ դիմադրության վերջին պատճառը այն չէ, որ նրա
որոշ մասնակիցներ նույնպես պատասխանատու են ան-
մեղ մարդկանց մասսայական հալածանքների համար
այն ժամանակաշրջանում, երբ Ստալինի հետ միասին
ղեկավարում էին երկիրը։ Բավական չէ, որ Ստալինը և
հետագայում մերկացված հակապարտիական խմբի
մասնակիցները հաշվեհարդար են տեսել կոմունիստա-
կան պարտիայի ու սովետական պետության ականավոր
գործիչների հետ։ Ինչպես պարզվել է, Մոլոտովը Ստա-
լինի հետ միասին թույլատրել է այսպես կոչված «ժո-
ղովրդի թշնամիների կանանց № 4 ցուցակով» պատժի
առավելագույն չափին դատապարտել նաև այդ գոր-
ծիչների կանանց։ Շատ դեպքերում Մոլոտովը աշխատել
է, ինչպես ասում են, լինել «ավելի մեծ կաթոլիկ, քան
ինքը պապն է»։ Փաստաթղթերից մեկում, որով իրա-
վունք էր տրվում երկար ժամանակով բանտարկել ռեպ-
րեսիայի ենթարկված աշխատողների կանանց մի մեծ
խմբի, Մոլոտովը ցուցակի ազգանուններից մեկի դիմաց
սեփական ձեռքով գրել է «ՊԱՉ»՝ պատժի առավելա-
գույն չափ։

Արդյոք այդպիսի անմարդկային կարգերի վերա-



կանգնման մասին չէ, որ հոգ են տանում չինական ղե-
կավարները։ Արդյոք այդ չէ՞ պատճառը, որ նրանք
համակրում են մեր պարտիայի շարքերից դուրս շպրտ-
ված մարդկանց։

Անհատի պաշտամունքի հարցում չինական ղեկա-
վարները հրաժարվել են ոչ միայն միջազգային կոմու-
նիստական շարժման եզրակացություններից ու դիրքո-
րոշումներից, այլև իրենց իսկ նախկին հայտարարու-
թյուններից։ Բոլորին հայտնի է, որ Չինաստանի կոմ-
պարտիայի ղեկավարների 1956 և 1957 թվականների
հայտարարություններում բարձր գնահատական էր տըր-
վում անհատի պաշտամունքի հետևանքների վերացման
բնագավառում ՍՄԿՊ-ի գործունեությանը։ Կոմունիս-
տական ու բանվորական պարտիաների 1957 թվականի
խորհրդակցությունում Մաո Ցզե-դունն ասել է. «Սովե-
տական Միությունում Ստալինի մահից հետո անցած
վերջին 4—5 տարում դրությունն զգալիորեն բարելավ-
վել է ինչպես ներքին քաղաքականության բնագավա-
ռում, այնպես էլ արտաքին քաղաքականության բնագա-
վառում։ Դա վկայում է, որ այն գիծը, որ ներկայացնում
է ընկեր Խրուշչովը, ավելի ճիշտ է, իսկ այդ գծի դեմ
հանդես գալը սխալ է»։

Այժմ չինական ղեկավարները, ելնելով իրենց քաղա-
քական հաշիվներից, պաշտպանում են անհատի պաշ-
տամունքը։ Նրանք Ստալինի թույլ տված խեղաթյուրում-
ներն ու սխալներն իրենց պաշտպանության տակ են ա-
ռել առաջին հերթին այն պատճառով, որ իրենք են ար-
մատավորում Մաո Ցզե-դունի անձի պաշտամունքը։

Համաշխարհային կոմունիստական շարժումը, ամ-
բողջ աշխարհի գիտակից բանվորները ՉԿՊ ղեկավար-
ության այժմյան քաղաքականության օրինակով կրկին
անգամ համոզվում են, որ որքան արատավոր է եղել և
արատավոր է մնում անհատի պաշտամունքի պրակտի-
կան, ինչպիսի վնաս է հասցնում նա ժողովրդի շահե-
րին, իմպերիալիզմի դեմ սոցիալիզմի համար մղվող
պայքարին։

Այսպիսով, Չինաստանի կոմունիստական պարտիայի
ղեկավարների այժմյան հակալենինյան, պառակտողա-
կան կուրսի ակունքների քննարկումը ստիպում է հան-
գել հետևյալ եզրակացությանը. միջազգային կոմունիս-
տական շարժումը բախվել է «ձախ» ֆրազով քողարկ-
վող մանրբուրժուական, նացիոնալիստական թեքման

ռեալ վտանգի հետ: Այդ թեքման վտանգն առավել ևս աճում է այն պատճառով, որ ներկա դեպքում մենք գործ ունենք այնպիսի պարտիայի ղեկավարների հետ, որը կանգնած է մեծ պետական ապարատ, գաղափարական ներգործության բոլոր միջոցներն ունեցող իշխանության գլուխ:

Միանգամայն հասկանալի է, որ ՍՄԿՊ-ն, ինչպես և մարքսիստական-լենինյան բոլոր պարտիաները, չեն կարող միջոցներ չձեռնարկել առավելագույն չափով թուլացնելու համար այն վնասը, որն այդ մանրբուրժուական թեքումը կարող է հասցնել համաշխարհային կոմունիստական շարժմանը:

ՍՄԿՊ Կենտկոմի «Կոմունիստ»
ամսագրի 1964 թ. 5-րդ համարից:

---

ՊԱՅՔԱՐԵՆՔ ԱՌՈՂՋ ԿԵՆՑԱՂԻ ՀԱՄԱՐ

---

# ՀՆԱՑԱԾ

## ՍՈՎՈՐՈՒՅԹՆԵՐԻ ՈՒ ՏՐԱԴԻՑԻԱՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Ժամանակի ընթացքում մարդիկ որոշակի սովորույթներ են մշակել կյանքի տարբեր իրադարձությունների կապակցությամբ, որոնք աստիճանաբար արմատավորվել են կյանքում և վերածվել տրադիցիաների: Ինչպիսիք էլ որ լինեն այդ սովորույթներն ու տրադիցիաները, նրանք կազմում են մեր կենցաղի կարևոր բաղկացուցիչ մասը: Մարդիկ միշտ էլ մտահոգվել են այն մասին, որ հարկավոր է որևէ կերպ նշել կյանքում տեղի ունեցող կարևոր դեպքերը՝ ծնունդն ու մահը, ուրախությունն ու վիշտը, հաղթանակն ու պարտությունը և այլն: Այս կապակցությամբ էլ առաջացել են որոշակի սովորույթներ ու արարողություններ կապված ամուսնության (հարսանիքի), երեխայի ծնվելու (ծննդի), մահվան (թաղման արարողություն), զանազան ուրախ առիթների հետ (նոր տարի, քաղաքական տոներ, տարելիցներ նշելը և այլն): Զանազան արարողություններ են մշակվել նաև կապված բնության տարբեր երևույթների հետ (գարնան սկիզբը նշելը, ծաղկի տոնը, բերքի տոնը, ձմռան տոնը և այլն): Բացի այդ, կենցաղում մտցվել և դարերի ընթացքում ամրապնդվել են նաև շատ ծիսակատարու-



թյուններ, որոնք անմիջականորեն կապված են կրոնի, եկեղեցու հետ:

Ազգերի ձևավորմանը զուգընթաց այդ զանազան սովորույթներն ու տրադիցիաներն ընդունում են ազգային բնույթ:

Ինչպես ամեն մի ժողովուրդ, այնպես էլ հայ ժողովուրդը պատմական երկարատև զարգացման ճանապարհին ստեղծել, ձևավորել ու կյանքում, կենցաղում արմատավորել է որոշակի սովորույթներ, առօրյա կյանքի կանոններ, որոնք հաղորդվել են սերնդից-սերունդ և դարձել ազգային տրադիցիաներ: Նրանցից լավագույններն այսօր էլ պահպանվում են մեր ժողովրդի կողմից, ստանալով նոր բովանդակություն, կիրառման նոր ձևեր: Որքա՜ն լավ ու գեղեցիկ տարրեր կան մեր ազգային այնպիսի սովորույթների մեջ, ինչպես օրինակ, բնակարան կահավորելը, հյուրասիրությունը, հարսանեկան հանդեսները, նոր տարին դիմավորելը, քաղաքական տոներ նշելը և այլն:

Սակայն, դժբախտաբար, այդ լավագույն սովորույթների կողքին մեզանում շարունակում են պահպանվել նաև որոշ տրադիցիաներ ու արարողություններ, որոնք ոչնչով չեն համապատասխանում ներկա դարաշրջանի ոգուն, հնացած են, հետադիմական ու վնասակար: Դրանց մի զգալի մասն էլ կապված է կրոնի հետ, իսկ կրոնն ու եկեղեցին օգտագործում են այդ հնացած տրադիցիաներն ու սովորույթները մարդկանց գիտակցության մեջ կրոնի ազդեցությունն ամրապնդելու նպատակով: Ուստի և այդ հին սովորույթների ու տրադիցիաների դեմ մղվող վճռական ու հետևողական պայքարը, մեր կյանքից դրանց վերացումը կարևոր նշանակություն կունենա աշխատավորների աթեիստական դաստիարակության գործում, կօգնի մարդկանց, որպեսզի նրանք ապրեն առողջ կենցաղով:

Խոսենք որոշ ծեսերի ու սովորույթների մասին, որոնք կապված են հարսանեկան հանդեսների հետ:

Հարսանեկան հանդեսները մեզանում հիմնականում անցնում են մեծ հանդիսավորությամբ, կազմակերպված և հետաքրքիր: Նրանցում գրեթե բոլոր հարազատների, բարեկամների, ընկերների ու հարևանների ներկայությունը, նրանց բարի ու խրատական խոսքերը իրենց ներգործությունն են ունենում երիտասարդ ամուսինների հետագա վարքագծի վրա, նրանց վրա որոշակի պատասխանատվություն են դնում:

Հարսանեկան հանդեսների մեջ կան շատ սովորույթ-
ներ, որոնք միանգամայն առողջ բովանդակություն ու-
նեն և հարսանիքը գեղեցիկ, հանդիսավոր անցկացնելու
համար ուղղակի անհրաժեշտ են: Սակայն պետք է նը-
շել, որ այստեղ էլ կան որոշ սովորույթներ, հնացած
տրադիցիաներ, որոնք ավելորդ են և նրանցից պետք է
հրաժարվել:

Ամենից առաջ խոսենք օժիտի մասին: Անժխտելի
է, որ որոշ օժիտ անհրաժեշտ է, մանավանդ եթե ամուս-
նացող զույգը բոլորովին առանձին բնտանիք է կազմում:
Այդ օժիտի մեջ պետք է մտնեն առօրյա կենցաղային
գործածության մանր իրեր: Սակայն չի կարելի չասել,
որ վերջերս յուրատեսակ մրցավազք է առաջացել օժի-
տի պատրաստման գործում: Նյութապես առավել ապա-
հովված որոշ մարդիկ իրենց ամուսնացող դուստրերի
օժիտի մեջ մտցրել են ժամանակակից արդյունաբերա-
կան արտադրության բազմաթիվ նոր արտադրանքներ՝
հեռուստացույց ու ռադիոընդունիչ, լվացքի մեքենա ու
սառնարան, դաշնամուր ու բնակարանի կահույքի ամ-
բողջ կոմպլեկտ, գուցե և ավտոմեքենա: Մի՞թե դա օժիտ
է: Եվ առանձին մարդիկ էլ, ովքեր համապատասխան
հնարավորություններ չունեն այդպիսի ճոխ օժիտ պատ-
րաստելու համար, հարկադրված են «մյուսներից ետ չը-
մնալու համար» նյութական ավելորդ զոհաբերություն
կատարել, իրենց զրկել՝ հարուստ օժիտ պատրաստելու
համար:

Մեզ թվում է, որ չափից ավելի հարուստ օժիտը հա-
զիվ թե դրական նշանակություն ունենա ամուսնացող
զույգի դաստիարակության համար: Ընդհակառակը, դա
կարող է անհոգ տրամադրություն ստեղծել դեպի իր սե-
փական քրտինքով անհրաժեշտ միջոցներ ձեռք բերելը:
Չափից ավելի հարուստ օժիտը շատ դեպքերում էլ ուղ-
ղակի ցուցամոլության արդյունք է և կարող է բացասա-
կան նշանակություն ունենալ ամուսինների՝ միմյանց նը-
կատմամբ ունեցած վերաբերմունքի գործում: Առանձին
դեպքերում էլ գուցե հարուստ օժի՞տն է հանդիսանում
ամուսնության միակ «հիմքը», որը միանգամայն անզոր
է իր վրա պահելու ընտանիքի նման բարդ ու պատաս-
խանատու կառույցի ծանրությունը: Վճռականորեն պետք
է հրաժարվել օժիտային մրցավազքից, ամուսնությունը
ամբողջովին մաքրել նյութական շահախնդրություննե-
րից:



Միանգամայն հնացած է հարսանիքի ժամանակ նվա-
գողներին «շաբաշ» տալը: Առանձին մարդիկ ցուցամո-
լություն անելով, ձգտելով ավելի առատաձեռն երևալ,
մեծ դրամ են «շաբաշ» տալիս (իհարկե, մեծ մասամբ
ոչ իրենց աշխատանքային եկամուտներից), հաճախ ան-
հարմար դրության մեջ դնելով նրանց, ովքեր դրա հնա-
րավորություն չունեն: Իսկ դրությունից դուրս գալու
համար վերջիններս կամ խուսափում են հարսանիքից,
կամ ստիպված լինում նյութական զոհաբերության
դիմելու:

«Շաբաշը» հետամնաց, սովետական քաղաքացու ար-
ժանապատվությունը վիրավորող սովորույթ է և պետք
է նրանից հրաժարվել: Նվագի համար պետք է որոշակի
պայմաններով միանգամից վճարել, ինչպես ամեն մի
աշխատանքի համար:

Մի քանի խոսք հարսանեկան քավորի մասին: Մեր
կարծիքով հարսանեկան քավոր կամ ինչպես ասում են
«կարմիր վկա» ընտրելու սովորույթը վատ չէ: Դժբախ-
տաբար ներկայումս քավոր դառնալն էլ մեզանում դար-
ձել է բարդ պրոբլեմ: Բանը նրանում է, որ քավոր լինե-
լը կապված է մեծ ծախսերի հետ:

Խոսենք թաղման հետ կապված ծեսերի ու սովորույթ-
ների մասին: Անժխտելի է, որ մահը ամենացնցող երե-
վույթներից է: Եվ պատահական էլ չէ, որ մարդիկ թաղ-
ման հետ կապված զանազան սովորույթներ, տրադի-
ցիաներ, ծեսեր են մշակել:

Թաղման արարողության մեջ դրական է այն, որ
վախճանվածի բարեկամները, հարևանները, աշխա-
տանքային ընկերները, հասարակական կազմակերպու-
թյունների ներկայացուցիչները իրենց անմիջական մաս-
նակցությամբ հարգանք են մատուցում հանգուցյալին,
սփոփում նրա հարազատներին, նրանց օգնում դժբախ-
տության այդ պահին, թեթևացնում նրանց վիշտը: Դա
միանգամայն ավելորդ է դարձնում թաղմանը հոգևորա-
կանության ներկայացուցիչների մասնակցությունը: Նը-
ման դեպքերում անգամ խիստ հավատացյալ մարդիկ
էլ հրաժարվում են հոգևորականների մասնակցու-
թյունից:

Սակայն թաղման ծիսակատարության մեջ դեռևս ոչ
քիչ հնացած, անիմաստ, ավելորդ ու վնասակար սովո-
րույթներ կան: Օրինակ, մեզանում սովորություն կա

հանգուցյալի դիակը երկու, երեք օր, երբեմն ավելի երկար պահել բնակարանում, նրա հարազատների աչքի առջև, որի հետևանքով տեղի է ունենում սոսկալի լաց ու ողբ։ Եթե սառը դատենք, ապա պետք է ասել, որ դրա ոչ մի անհրաժեշտություն չկա։ Չէ՞ որ ողբալով ոչինչ չի կարելի փոխել, մինչդեռ չափից ավելի կրքոտ ողբալը, կարող է ծանր անդրադառնալ հենց ողբացողների վրա։ Նույնիսկ առանձին տեղերում «հրավիրվում» են հատուկ ողբասաց կանայք, որոնց խնդիրն է բարձրաձայն լաց լինել, սրտաճմլիկ մեղեդիներ երգել և նույնքան էլ սրտաճմլիկ խոսքեր ուղղել հանգուցյալին ու նրա հարազատներին՝ ներկաների զգացմունքների վրա առավել ճնշող ներգործություն թողնելու նպատակով։ Եվ իրոք, դա խիստ ծանր է ազդում ներկաների, առավել ևս հանգուցյալի հարազատների վրա։ Սակայն այդպես չի լինի, եթե հրաժարվենք հնացած այդ սովորությունից։

Երկու խոսք մահվան առթիվ թերթերում հրապարակվող ցավակցությունների մասին։ Վերջին տարիներս մեզ մոտ առաջ է եկել յուրատեսակ մոդա՝ թերթերում ամենալայն մասշտաբներով ցավակցություններ հայտնել այս կամ այն մերձավոր ու հեռավոր բարեկամի, ծանոթի, ընկերոջ և մինչև անգամ բոլորովին անծանոթի մահվան կապակցությամբ։ Ակամայից հարց է ծագում՝ ինչի՞ համար է այդ ամենը, ո՞ւմ են դրանք հարկավոր, ի՞նչ իմաստ ու նպատակ ունեն դրանք։ Երբեմն էլ թերթերում ցավակցություն հայտնելը, վերածվում է որոշ մարդկանց առջև քծնելու և հաճոյանալու միջոցի։ Առանձին դեպքերում էլ թերթում ցավակցություն տալը կրում է սոսկ ցուցամոլության բնույթ, թե տեսեք, մենք կարող ենք ոչ մի բանի առջև կանգ չառնել և ցավակցություն հրապարակել թերթում։ Մեր կարծիքով, պետք է կտրականապես հրաժարվել թերթերում անհատական կամ խմբային կարգով ցավակցություններ հրապարակելուց։ Թերթում պետք է հրապարակել միայն մահազդներ, որպեսզի հանգուցյալի բարեկամները, ծանոթներն ու ընկերները տեղյակ լինեն տվյալ անձի մահվան և թաղման օրվա մասին։

Անհրաժեշտ ենք համարում խոսել նաև թաղման հետ կապված մի այլ սովորության մասին։ Ներկայումս ստեղծված սովորույթի համաձայն թաղումը կապվում է հսկայական ծախսերի հետ, որոնց մի մասն, իհարկե, անհրաժեշտ, անխուսափելի ծախսեր են։ Այդ մասին չէ,



որ ուզում ենք խոսել։ Հարկ ենք համարում նշել մեռելահացի (քելեխի), մահվան յոթերորդ, քառասուներորդ օրերի և առաջին տարելիցի հետ կապված հսկայական ծախսերը։ Այդ օրերին մեռելահացի սեղանները պարզապես հիշեցնում են հարսանիքի սեղան։ Ի՞նչ անհրաժեշտություն կա մահվան հետևանքով առաջացած հոգեկան ծանր վիճակին ավելացնել նյութական զգալի հոգսեր։ Մի՞թե ավելորդ չեն նման ճոխ սեղանները։ Առանձին մարդիկ էլ չափից ավելի խմելով ոգելից խմիչքներ, բոլորովին մոռացության են տալիս սուգն ու սփոփիչ խոսքերից անցնում խնջույքների բաժակաճառերի։

Մի քանի խոսք թաղման ժամանակ երգերի ու նվագի մասին։ Հուղարկավորության ժամանակ հրավիրվում են նվագողները։ Տխուր մեղեդիներ նվագելը ազդում է մարդկանց վրա, և կարծես թե հանգստացնում է նրանց։ Սակայն, դժբախտաբար, միշտ չէ, որ երաժշտությունն և մանավանդ երգ լսելը նման պահին տանելի է։ Երբեմն նվագում են անճաշակ, ժողովրդի սիրած մեղեդիների աղավաղող այսպես ասած «երաժշտություն», որը խիստ կերպով ազդում է լսողների նյարդերի վրա։ Կամ թե չէ երգում են այնպիսի երգեր, որոնք ձոնված են ուրախության դեպքերի համար և նրանց սգո բնույթ տալու համար «յար», «սիրելի», «սիրուն աղավնյակ» և նման բառերը փոխում են «եղբայր», «հայր», «որդի», «մայր», «քույր» և այլ բառերով (նայած թե ով է մահացել) և երաժշտությունն ու հանգավորումը աղավաղելով դրանք հրամցնում են մարդկանց։

Դիակի վրա կամ ընդհանրապես գերեզմանոցում երգելը շատ հնացած սովորույթ է, դրան ավելացրած նաև այն, որ երգում են պատվերով, հրապարակորեն վարձ վերցնելով, որը տխուր և տգեղ տպավորություն է թողնում։ Երբ տերտերն է գերեզմանին երգում, հայտնի է, որ նա երգում է եկեղեցու կողմից դրա համար հատուկ հաստատված, մեծ մասամբ խորհրդավոր երգեր, որոնք ոչ թե իրենց բովանդակությամբ, այլ ձևով, զգացմունքային կողմով պետք է ներգործեն մարդկանց վրա։ Շատ ցավալի է, որ մեր առանձին ընկերներ, երբեմն բոլորովին երիտասարդներ, ովքեր երգելու շնորհք ունեն և կարող են մարդկանց հաճույք պատճառել զանազան ուրախ առիթներով, տերտերի դեր են ստանձնում թաղման ծեսի ժամանակ։

Հնացած ու ավելորդ է թաղումից հետո գերեզմանոցում հանգուցյալի հարազատների ձեռքը սեղմելով ցա-

*վակցություն հայտնելը: Չէ՞ որ թաղմանը մասնակցում են տասնյակ, երբեմն էլ հարյուրավոր մարդիկ և միանգամայն հակասանիտարական է, երբ նրանք մեկը մյուսի ետևից սեղմում են հարազատների ձեռքը: Այս տհաճ ու վնասակար սովորույթը ևս պետք է անպայման վերացնել:*

*Ոմանք կարող են առարկել, ասելով, որ նշված սովորույթներից ազատվել չի լինի, դրանք տարիների ու տասնամյակների, նրանց մի մասն էլ դարերի ընթացքում արմատավորվել են, այդպես էլ պետք է մնան: Մենք չենք ժխտում, որ սովորույթից, տրադիցիայից ազատվելը այնքան էլ հեշտ չէ, այն հաղթահարելու համար հարկավոր է ժամանակ, վճռականություն, հետևողականություն, նախաձեռնություն: Առանձին մարդիկ այսպես են դատում՝ ճիշտ է, այդ սովորույթը հնացած է, ավելորդ, վնասակար, բայց թող մյուսները չպահպանեն, մենք էլ չենք պահպանի: Բայց դա, իհարկե, ճիշտ դատողություն չէ: Վերջին հաշվով նախաձեռնողներ պետք է լինեն: Եթե բոլորն էլ սպասեն մյուսներին, ապա, հասկանալի է, որ հնացած սովորույթները կմնան ու է՛լ ավելի կխորանան: Բայց կան օրինակներ, որոնք ցույց են տալիս, որ առանձին առավել արմատացած սովորույթներից այնուամենայնիվ կարելի է հրաժարվել: Վերցնենք, օրինակ, թաղման ժամանակ ծաղկեպսակներ օգտագործելու սովորույթը: Բոլորին հայտնի է, թե ինչպիսի քանակությամբ ծաղիկ էր ոչնչացվում և ավելորդ ծախսեր էին կատարվում ծաղկեպսակների համար: Աստիճանաբար միանգամայն պարզ դարձավ, որ ծաղկեպսակների այդպիսի քանակությունը միանգամից ոչնչացնելը լրիվ անիմաստ է: Եվ այժմ, թաղումների ժամանակ այլևս ծաղկեպսակներ չեն օգտագործում և դրանից ոչ մեկը չի վիրավորվում: Վճռականություն և հետևողականություն ցուցաբերելու դեպքում կարելի է նման շատ սովորույթներից հաջողությամբ հրաժարվել:*

*Մենք պետք է հասնենք հնացած սովորույթների ու տրադիցիաների հաղթահարմանը և նոր, ժամանակակից տրադիցիաների ու սովորույթների հաստատմանը, որպեսզի մեր կենցաղը լինի ավելի գեղեցիկ, ավելի հարուստ ու բովանդակալից:*

Վ. ՍԱՀԱԿՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու



# ԱԶԱՏԱԳՐՎԱԾ ԿՈՒԲԱՆ

*(Տպագրվում է ժողովրդական ռևոլյուցիայի 11-րդ տարեդարձի առթիվ, թվեր և փաստեր)*

*«Թեև Կուբան և Սովետական Միությունը գտնվում են տարբեր կիսագնդերում և հազարավոր կիլոմետրերով է չափվում նրանց հեռավորությունը, մեր ժողովուրդները միևնույն, լենինյան ուղիով ընթանում են սոցիալիստական պետությունների ընդհանուր շարքում»:*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*

**Լեգենդար Ազատության կղզի: Այսպես են անվանում ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը, Սովետական Միության և սոցիալիստական լագերի մյուս երկրների աշխատավորները Կուբայի Ռեսպուբլիկային: Տասնմեկ տարի առաջ, 1953 թվականի հուլիսի 26-ին ականավոր ռևոլյուցիոներ Ֆիդել Կաստրոյի գլխավորությամբ սկսվեց Կուբայի ժողովրդական ռևոլյուցիան, որը փայլուն հաղթանակով ավարտվեց 1959 թվականի հունվարի մեկին: Պատմության աղբակույտը շպրտվեց ամերիկյան իմպերիալիստների դրածո Բատիստայի ռեակցիոն ռեժիմը:**

**Տարեցտարի աճում և ամրապնդվում է Սովետական Միության և Կուբայի Ռեսպուբլիկայի եղբայրական բարեկամությունը: Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրները անշահախնդիր օգնություն են ցույց տալիս Կուբային:**

**Ժողովրդական իշխանության տարիներին սոցիալիստական ռևոլյուցիայի միացյալ պարտիայի ղեկավարությամբ ձեռք բերվեցին պանծալի հաջողություններ: Ահա տեղեկություններ այդ մասին:**

☆ *Երկրի արդյունաբերական արտադրանքի 90 տոկոսը թողարկում է սոցիալիստական սեկտորը: Անընդհատ ավելանում է շաքարի արտադրությունը, որը 1970 թվականին հասնելու է 10 միլիոն տոննայի:*

☆ Սկսած 1967 թվականից Կուբան ամեն տարի Սովետական Միությանը կվաճառի 4—5 միլիոն տոննա շաքար: Սահմանված են շաքարի կայուն գներ, որը հնարավորություն է տալիս Կուբային պլանավորել իր էկոնոմիկան:

☆ Եթե 1960 թվականին Սովետական Միության և Կուբայի Ռեսպուբլիկայի միջև ապրանքաշրջանառությունը կազմում էր 157 միլիոն դոլար, ապա 1964 թվականի սկզբին այն գերազանցում էր 544 միլիոն դոլարից:

☆ Կուբայում բուռն թափով առաջ է գնում շինարարությունը: Ըրպեսզի այն կատարվի էժան, որակով և արագ, հատուկ համաձայնությամբ Սովետական Միությունը Կուբա է ուղարկում խոշոր պանելային տնաշինական գործարանների սարքավորումներ: Տնաշինական գործարաններն ամեն տարի երկրին կտան 70 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն:

☆ Նշանակալից հաջողությունների են հասել Կուբայի գյուղատնտեսության աշխատողները: Ներկայումս մշակվող հողերի մոտ 50 տոկոսը պատկանում է սոցիալիստական սեկտորին: Մինչդեռ ռևոլյուցիայից առաջ կուբայական հողերի մոտ կես մասը գտնվում էր երկրի բնակչության 1,5 տոկոսը կազմող սեփականատերերի ձեռքում:

☆ Ռևոլյուցիայից հետո լատիֆունդիաների փոխարեն ստեղծվել են մոտ 590 պետական կալվածքներ, որոնք մասնագիտացվել են շաքարեղեգ մշակելու գործում:

☆ Նույն լատիֆունդիաների փոխարեն ստեղծվել են նաև 289 ժողովրդական անասնապահական կալվածքներ, որոնք առաջիկա տարիներին պարտավոր են լրիվ բավարարել բնակչությանը մսով, յուղով, կաթով:

☆ Անցյալ տարվա վերջերին Կուբայի կառավարությունը ընդունեց օրենք երկրորդ ագրարային ռեֆորմի մասին, որով ազգայնացվեց 150 հազար կաբալերիա (կաբալերիյան հավասար է 13,45 հեկտարի) հողային տարածություն:

☆ Կուբայի կառավարությունը մեծ գումարներ է հատկացնում գյուղատնտեսության զարգացման համար: Անցյալ տարի այդ նպատակով հատկացվեց 262 միլիոն պեսո, որը 60 անգամ ավելի է, քան ծախսվել է մինչև ռևոլյուցիան:



☆ Ռևոլյուցիայի տարիներին Կուբայում յուրացվել են ավելի քան 400 հազար հեկտար նոր հողեր:

☆ Վերջին տարում անասունների գլխաքանակն աճել է ավելի քան 600 հազարով:

☆ Սովետական Միությունը պարտավորվել է Կուբային մատակարարել 1.500 տրակտոր և 3.500 զանազան մեքենաներ:

☆ Տարեցտարի ավելանում են Կուբայի էլեկտրակայաններն ու արդյունաբերական ձեռնարկությունները: Սովետական Միության օգնությամբ Կուբայում կառուցվում է 300 հազար կիլովատ կարողությամբ ջերմաէլեկտրակայան իր հաղորդիչ գծերով, նավթամշակման նոր գործարան՝ տարեկան 2 միլիոն տոննա նավթ վերամշակելու կարողությամբ:

☆ Շուտով Կուբայում պողպատի արտադրությունը կավելանա 3 անգամ, որովհետև Սովետական Միության օգնությամբ այնտեղ վերակառուցվում և ընդլայնվում են գործող մետալուրգիական գործարանները: Այդ գործարանները տարեկան երկրին կտան 350 հազար տոննա մետաղ:

☆ Սովետական Միության օգնությամբ Կուբայում կառուցվում են մեխանիկական և ավտովերանորոգման գործարաններ, ինչպես նաև ձկնորսական նավահանգիստներ:

☆ Կուբայում խոշոր ուշադրություն է դարձվում քիմիական և նիկելի արդյունաբերության զարգացման վրա: Այդ կապակցությամբ Սովետական Միությունը Կուբային ցույց է տալիս տեխնիկական աջակցություն:

☆ Կուբայում ծաղկում ու բարգավաճում են գիտությունն ու կուլտուրան: Նա Լատինական Ամերիկայում առաջինն է, որը դարձել է համատարած գրագիտության երկիր:

---

## ՀՈՒՄՈՐ

— Ինքս լավ եմ,— ասում է վիշապօձը,— բայց կինս օձ է։

***

Նա հռչակվել էր որպես շատ կարդացած ու շատ խելոք մարդ։ «Դե, ինչ կա որ,— ասաց նա ինքն իրեն,— այդ ազատում է ինձ հոգնեցնող անհրաժեշտությունից՝ լինել այդպիսին իրականում»։

### Ժողովրդական առածներ

Ով հողը փայփայում է, նրան էլ հողը սիրում է։

Մի սպասիր բնությունից ողորմածություն, ինքդ ցանիր, ինքդ էլ աճեցրու։

Կվարես ու կցանես լավագույն ժամկետներում կըստանաս բարձր բերք։

Տուր հողին անհրաժեշտ պարարտանյութեր, կլինի բերքը բարձր։

Ավելի շատ նայիր դեպի դաշտ, ավելի քիչ՝ փողոց։

Մի վախեցիր ծանր աշխատանքից, վախեցիր դատարկ խոսակցություններից։

Կուշանաս հողից մեկ ժամով, նա կուշանա մեկ տարով։

Գարունը փոփոխական է, ինչպես խորթ մոր դեմքը։

Ով կերավ և իսկույն քնեց, նա անասուն դառնալ է ուզում։

Եթե չաշխատես, բարօրության չես հասնի։

Անհոգս գլուխ ունենում է միայն բանջարանոցային խրտվիլակը։

Մի երդվիր շուտ վեր կենալ, այլ երդվիր երկար չքընել։



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Չինական պառակտիչների գործունեությունը ճախողման է մատնված

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ընդդեմ պառակտիչների, հանուն կոմունիստական շարժման միասնության, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 7-ի և 9-ի համարներում։*

Չինական ղեկավարների տեսական կոնցեպցիաների քաղաքական իմաստը, *«Պրավդա» թերթի խմբագրական հոդվածները, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի մայիսի 13-ի, 16-ի և 19-ի համարներում։*

Պատերազմի, խաղաղության և ռևոլյուցիայի վերաբերյալ ավանտյուրիստական դիրքորոշումների վտանգը, *հոդված, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1964 թվականի 9-րդ և 10-րդ համարներում։*

Չինաստանի կոմպարտիայի ղեկավարության հայացքներն ու քաղաքականությունը մանրբուրժուական, նացիոնալիստական, նեոտրոցկիստական թեքում են, *հոդված, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1964 թվականի 11-րդ և 12-րդ համարներում։*

Տ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ և Մ. ՄԱՐՏԻԿՅԱՆ— Խաղաղությունը սոցիալիզմի դաշնակիցն է, *հոդված, տպագրված «Լենինյան ուղիով» ամսագրի 1964 թվականի 5-րդ համարում։*

## 2. Մասսաների գաղափարական դաստիարակության համար

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Մարքսիզմ-լենինիզմը մեր դրոշն է, մեր մարտական զենքը, *ճառ, արտասանած ՍՄԿԿ Կենտկոմի 1963 թվականի հունիսյան պլենումում, Հայպետհրատ, 1963։*

Լ. Ֆ. ԻԼԻՉՈՎ— Պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրները, *զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի 1963 թվականի հունիսյան պլենումում, Հայպետհրատ, 1963։*

Կոմունիստական պարտիայի մարտական օգնականը, *համամիութենական «Գիտելիք» ընկերության 4-րդ համագումարը, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 4-ի համարում։*

Քաղաքական և գիտական գիտելիքները ի սպաս դնել կոմունիզմի կառուցման գործին, *Հայկական ՍՍՌ «Գիտելիք» ընկերության 7-րդ համագումարը, ինֆորմացիոն հաղորդագրություն, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի մայիսի 28-ի համարում։*

Հանուն գաղափարական աշխատանքի նոր վերելքի, *«Լենինյան ուղիով» ամսագրի 1964 թվականի 6-րդ համարի առաջնորդողը։*

## 3. Անում և ամրապնդվում է սովետական ժողովուրդների եղբայրական բարեկամությունը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, արտասանած Տ. Գ. Շևչենկոյի արձանի բացման ժամանակ 1964 թվականի հունիսի 10-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 11-ի համարում։*

Հայ գրականության և արվեստի շաբաթը Էստոնիայում, *նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի մայիսի 30-ի, հունիսի 2—10-ի համարներում։*

Արարատյան ամառը Մերձբալթիկայում, *«Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 10-ի առաջնորդողը։*

## 4. Արդյունավետ օգտագործել հողի յուրաքանչյուր հեկտարը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի որոշումը Հայկական ՍՍՌ-ում հողի պահպանության և արդյունավետ օգտագործման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 4-ի համարում։*

Գ. Ս. ՊԵՏՐՈՍՅԱՆ— Հողի պահպանությունը և արդյունավետ օգտագործումը Հայկական ՍՍՌ-ում, *զեկուցում Հայկական ՍՍՌ 6-րդ գումարման Գերագույն Սովետի 3-րդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 4-ի համարում։*

Մտքերի փոխանակություն Հայկական ՍՍՌ 6-րդ գումարման Գերագույն Սովետի 3-րդ սեսիայում Գ. Ս. Պետրոսյանի զեկուցման շուրջը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 4-ի և 5-ի համարներում։*

Պահպանել և արդյունավետ օգտագործել հողը, *«Ս. Հ.»-ի 1964 թվականի հունիսի 12-ի առաջնորդողը։*

---

*ԿԱՐԴԱՑԵՔ*

## ԱՅՍ ԳԻՐՔԸ

ԱՍՏՎԱԾՆԵՐԸ ՄԵՌՆՈՒՄ ԵՆ, Գիտա-աթեիստական ժողովածու։ Աշխատասիրեց և կազմեց Արա Սվասյանը, *Հայպետհրատ, 1962 թ., 690 էջ։*

*Սույն գրքում զետեղված են մարքսիզմ-լենինիզմի կլասիկների և մինչմարքսյան աթեիզմի նշանավոր ներկայացուցիչների՝ կրոնը մերկացնող մտքեր, ականավոր աթեիստների կյանքին ու գործունեությանը վերաբերող ակնարկներ, կրոնական սովորույթների, ծեսերի ու տոների ծագման, նրանց դասակարգային էության մասին մատչելի գիտական բացատրություններ, սնոտիապաշտություններն ու նախապաշարմունքները մերկացնող նյութեր, աթեիզմի հարցերի շուրջը դասախոսություններ լսող ունկնդիրներին հուզող հարցերի պատասխան-բացատրություններ, քնի, երազի, մարդու և երկրի ծագման շուրջը հյուսված կրոնական անհեթեթ առասպելական պատկերացումների, տոտեմիզմի, անիմիզմի, ֆետիշիզմի, հեթանոսական շրջանի բազմաստվածության, կրոնական հիմնական ուղղությունների՝ բուդդիզմի, հուդաիզմի, քրիստոնեության, մահմեդականության մասին տեղեկատուներ ու հանրամատչելի հոդվածներ, ինչպես նաև կրոնի վերաբերյալ պարտիայի ու կառավարության որոշումները։*

*Գրքում օգտագործված են Լոմոնոսովի, Դարվինի, Սեչենովի, Մեչնիկովի, Պավլովի, Տիմիրյազևի, Միչուրինի, Շմիդտի, Համբարձումյանի, աթեիստական շարժման մեջ իրենց անգնահատելի լուման մտցրած 18-րդ դարի ֆրանսիական մատերիալիստներ Դիդրոյի, Հոլբախի, Նեժոնի, Հելվեցիուսի, գիտության տիտաններ Կոպեռնիկոսի, Գալիլեյի, Ջորդանո Բրունոյի, Կամպանելլայի՝ կրոնի հիմքերին խորտակիչ հարված հասցնող երկերը, ականավոր գրականագետների ու հրապարակախոսների՝ կրոնի և նրա սպասարկուների հակաժողովրդական դիմակը պատռող թևավոր խոսքերն ու ասույթները, սովետական մարքսիստ-աթեիստների ավագ ու կրտսեր սերնդի ներկայացուցիչներ Լունաչարսկու, Յարոսլավսկու, Սկվորցով-Ստեպանովի, Ռումյանցևի, Ֆեդոսևի, Վասիլևի, Միխնևիչի աշխատությունները, պարբերական մամուլը։*

*Երկարամյա գիտա-աթեիստական պրոպագանդայի փորձն ու նրա արդյունքը հանդիսացող այս գիրքը ոչ միայն օգտակար ձեռնարկ կարող է լինել մեր աթեիստ-պրոպագանդիստներին, այլև մեծապես կօգնի հավատացյալներին՝ թոթափելու իրենց միտքն ու զարգացումը կաշկանդող կրոնական անամեջ հավատալիքներն ու սնոտիապաշտությունները։*

---

Ինդեքս՝ 77704

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ

ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 12

## 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ՎՖ 08298 Պատվեր 503 Տիրաժ 9357

Հանձնված է արտադրության 10/VI 1964 թ.,
Ստորագրված է տպագրության 18/VI 1964 թ.։

ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության II տպարան,
Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 8 կոպ.։